# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ





ԴԵԿՏԵՄԲԵՐ

23

1963

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



## СОДЕРЖАНИЕ




Խմբագրության հասցեն— *Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 71-րդ սենյակ, հեռախոս՝ 2—52—78։*

**Адрес редакции** — Ереван, ЦК КП Армении, II этаж, ком. 71, телефон 2-52-78.



Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք։

ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 23
ԴԵԿՏԵՄԲԵՐ
1963

ՀԿՊ Կենտկոմի գաղափարական աշխատանքի բաժին

Լույս է տեսնում ամիսը երկու անգամ


### ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

# ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ ՀԵՐԹԱԿԱՆ ՊԼԵՆՈՒՄԸ

*Սովետական Միության կոմունիստական պարտիան և սովետական կառավարությունը մեծ հոգատարություն են ցուցաբերում կոլտնտեսություններն ու սովխոզները կազմակերպորեն ու տնտեսապես ամրապնդելու մասին։*

*Պարտիայի և կառավարության ձեռնարկած միջոցառումների շնորհիվ վերջին տարիներին նկատելի աշխատանք է կատարվել մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների ու սովխոզների էկոնոմիկայի ամրապնդման ուղղությամբ։ Ռեսպուբլիկայի շատ կոլտնտեսություններ ու սովխոզներ, որոնք տարիներ շարունակ ետ էին մնում, վճռական քայլեր կատարեցին գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու գործում։*

*Ռեսպուբլիկայի ետ մնացող կոլտնտեսությունների ու սովխոզների էկոնոմիկան բարձրացնելու հարցը խոր և բազմակողմանի քննության ենթարկվեց Հայաստանի կոմպարտիայի Կենտկոմի հերթական 9-րդ պլենումում, որը տեղի ունեցավ 1963 թվականի նոյեմբերի 27-ին։*

*Պլենումը քննարկեց Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի նախագահ ընկ. Ա. Քոչինյանի զեկուցումը՝ «Ռեսպուբլիկայի ետ մնացող կոլտնտեսությունների և սովխոզների էկոնոմիկան բարձրացնելու միջոցառումների մասին»։*

*Ընկ. Ա. Քոչինյանը իր զեկուցման մեջ հանգամանորեն վերլուծում է մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների և սովխոզների աշխատանքը վերջին տասը տարիների ընթացքում։ 1953 թվականից հետո ընկած ժամանակաշրջանում առանձնապես արագ են զարգացել ռեսպուբլիկայի գյուղատնտեսության առավել առաջատար ճյուղերը՝ խաղողագործությունն ու պտղաբուծությունը։ Գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացումը հիմնականում տեղի է ունեցել ոչ թե ցանքատարածությունների ընդարձակման, այլ բերքատվության բարձրացման հաշվին։ 1962 թվականին, 1953 թվականի համեմատությամբ, բերքատվության աճը կազմում է. հացահատիկինը՝ 47,3, ծխախոտինը՝ 84,5, շաքարի ճակնդեղինը՝ 71,4, բանջարեղենինը՝ 72 տոկոս։*

*Ավելացել է նաև անասունների մթերատվությունը։ Աճել է կոլտնտեսությունների և սովխոզների հանրային անասունների գլխաքանակը։ 1963 թվականին, 1953 թվականի համեմատությամբ, խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը ավելացել է 15,7 տոկոսով, այդ թվում կովերինը՝ 49,4 տոկոսով։ Ոչխարների և այծերի գլխաքանակը ավելացել է 78, 1 տոկոսով։*

*Կոմունիստական պարտիան և սովետական կառավարությունը հսկայական միջոցներ են տրամադրում կոլտնտեսությունների ու սովխոզների էկոնոմիկայի ամրապնդմանը, նրանց տեխնիկական հագեցվածությանը։ Միայն 1954—1963 թվականների ընթացքում ռեսպուբլիկայի գյուղատնտեսության մեջ խոշոր կապիտալ ներդրումներ կատարվեցին ինչպես պետական, այնպես էլ կոլտնտեսային միջոցների հաշվին։ Դրանք մեծապես գերազանցեցին սովետական իշխանության գոյության նախորդ բոլոր տարիներին կատարված ներդրումները։*

*Որոշակի աշխատանք կատարվեց նաև գյուղատնտեսությունը ղեկավար կադրերով ամրապնդելու ուղղությամբ։ Կոլտնտեսություններում ու սովխոզներում աշխատող բարձրագույն ու միջնակարգ կրթությամբ մասնագետների թիվը անցած 10 տարում աճեց ավելի քան 3 անգամ։*

*Սակայն, այնուհետև նշում է զեկուցողը, գյուղատնտեսական մթերքների արտադրության մակարդակը զգալիորեն ետ է մնում ժողովրդի հարաճուն պահանջմունքներից։ Առաջավոր տնտեսությունների կողքին դեռևս գոյություն ունեն մի շարք կոլտնտեսություններ ու սովխոզներ, որոնք շարունակ ետ են մնում։*

*Քիչ չեն այն տնտեսությունները, որոնք պարբերաբար չեն կատարում գյուղատնտեսական մթերքների արտադրության և մթերումների պլանները։ Դրանց ճնշող մասը աշխատում է վնասով։ Առանձնապես ֆինանսական ծանր վիճակի մեջ են Գորիսի, Նոյեմբերյանի, Աշտարակի, Ապարանի, Իջևանի, Կրասնոսելսկի, Հոկտեմբերյանի, Էջմիածնի արտադրական վարչությունների տնտեսապես ետ մնացող կոլտնտեսությունները։*

*Ընկ. Ա. Քոչինյանը իր զեկուցման մեջ անդրադառնում է ռեսպուբլիկայի սովխոզների տնտեսական գործունեության հարցերին։ Վերջին տարիներին գյուղատնտեսական մթերքների արտադրության բնագավառում զգալիորեն ավելացել է սովխոզների տեսակարար կշիռը։ Նրանք 1962 թվականին հանձնեցին ռեսպուբլիկայում մթերված հացահատիկի 36 տոկոսը, մսի՝ 31,5, կաթի՝ 43 տոկոսը և այլն։*

*Սակայն ռեսպուբլիկայի սովխոզներում մթերքների արտադրության տեմպերը դեռևս ետ են մնում եղած հնարավորություններից։ Մի շարք սովխոզներում գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը և անասնապահության մթերատվությունը ավելի ցածր են, քան կոլտնտեսություններում։ Բարձր է մթերքների ինքնարժեքը։*

*Ընկ. Ա. Քոչինյանը այնուհետև հանգամանորեն խոսում է առանձին տնտեսությունների ետ մնալու պատճառների մասին։ Հիմնական պատճառներից մեկը,— ասում է զեկուցողը,— կադրերի, մարդկանց հետ տարվող անբավարար աշխատանքն է, նրանց ընտրության ու տեղաբաշխման գործում եղած լուրջ թերությունները։ Մինչև այժմ ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների 629 նախագահներից միայն 102-ն ունեն բարձրագույն մասնագիտական կրթություն։ Կոլտնտեսություններում ու սովխոզներում աշխատող 4.374 մասնագետները խիստ անհամաչափ են տեղաբաշխված, 141 կոլտնտեսություններ չունեն գյուղատնտեսներ, 152-ը՝ անասնաբույժներ, 425-ը՝ ինժեներներ կամ տեխնիկ-մեխանիկներ։*

*Գյուղատնտեսական արտադրությանը վնաս է*

հասցնում նաև կադրերի հոսունությունը։ Ետ մնացող տնտեսությունների մեծ մասում կոլտնտեսությունների նախագահների և սովխոզների դիրեկտորների տվյալ աշխատանքի ստաժը երեք տարուց էլ պակաս է։ Տնտեսությունների ղեկավարների հաճախակի փոփոխումները չեն կարող բացասաբար չանդրադառնալ հանրային արտադրության զարգացման վրա։

Մեր առջև կանգնած է կոլտնտեսությունները և սովխոզները, հատկապես ետ մնացող տնտեսությունները գործիմաց, ղեկավար կադրերով ամրապնդելու անհետաձգելի խնդիրը։ Անհրաժեշտ է համարձակորեն առաջ քաշել երիտասարդ մասնագետների, սիստեմատիկաբար հարստացնել կոլտնտեսային ու սովխոզային ղեկավար կադրերի գիտելիքները։

Ետ մնացող կոլտնտեսությունների և սովխոզների էկոնոմիկայի բարձրացումը համաժողովրդական գործ է։ Մենք չունենք ոչ մի օբյեկտիվ պատճառ կոլտնտեսությունների և սովխոզների ետ մնալու համար։ Եվ եթե դեռևս կան այդպիսի տնտեսություններ, ապա դա ամենից առաջ վկայում է կոլտնտեսային և սովխոզային կադրերի հետ տարվող աշխատանքի բարձիթողի վիճակով, կոլտնտեսությունների նախագահների և սովխոզների դիրեկտորների ընտրության և դաստիարակության գործում եղած լուրջ թերություններով։

Այնուհետև զեկուցողը նշում է, որ մեր ռեսպուբլիկայի մի շարք կոլտնտեսությունների ու սովխոզների ետ մնալու լուրջ պատճառներից է գյուղատնտեսական արտադրության զարգացման հնարավորությունների և ռեզերվների անբավարար օգտագործումը։ Իսկ չօգտագործված ռեզերվներ կարելի է գտնել գրեթե յուրաքանչյուր տնտեսությունում։

Կոլտնտեսությունների և սովխոզների ետ մնալու մյուս պատճառը հողագործությունը և անասնապահությունը վարելու ցածր կուլտուրան է։ Հաճախակի խախտվում են ագրոտեխնիկական կանոնները, ցանքի նորմաները ու ժամկետները, անբավարար և սխալ են օգտագործվում հանքային ու օրգանական պարարտանյութերը, գյուղատնտեսական տեխնիկան, թույլ է պայքարը գյուղատնտեսական վնասատուների և հիվանդությունների դեմ։

Այնուհետև ընկ. Ա. Քոչինյանը խոսելով ռեսպուբլի-



կայում կերի կայուն բազա ստեղծելու մասին, նշում է երկու կարևոր ճանապարհ. առաջին՝ բարելավել եղած խոտհարքները, արոտավայրերը, դրանց բերքատվության բարձրացման միջոցով հասնել այն բանին, որ բնական խոտհարքներից հավաքվի գոնե մեկուկես անգամ ավելի շատ խոտ, քան կուտակվում է այժմ։ Երկրորդ ուղին էռոզիայի ենթարկված և նախկինում դուրս գրված վարելահողերում բազմամյա խոտաբույսերի ցանքն է։ Դա կտա լրացուցիչ կեր և կկանխի հողի հետագա էռոզիան։

Ընկ. Ա. Քոչինյանը խոսեց նաև ոռոգելի հողատարածությունների ընդարձակման ուղղությամբ ռեսպուբլիկայում կատարված աշխատանքների և առաջիկա անելիքների մասին։ Նա նշեց, որ վերջին չորս տարիներին շահագործման են հանձնվել 59 նոր ջրանցքներ, ջրհան կայաններ, ջրամբարներ և այլն։

Պարտիայի Կենտկոմը, անձամբ Ն. Ս. Խրուշչովը հատուկ նշանակություն են տալիս ոռոգելի տարածությունների ընդարձակմանը, որը հացահատիկի ու գյուղատնտեսական մյուս կուլտուրաների կայուն բերքի ստացման կարևոր նախապայմանն է։ Ելնելով դրանից ՀԿՊ Կենտկոմը և ռեսպուբլիկայի Մինիստրների սովետը նախատեսել են 1964 թվականին 70 հազար հեկտար ջրովի հողատարածություն հատկացնել հացահատիկի ցանքին։

Ներկա էտապում, նշում է զեկուցողը, գյուղատնտեսության զարգացման շահերը պահանջում են առանձնահատուկ ուշադրություն նվիրել արտադրության մեքենայացմանն ու քիմիացմանը։ Վերջին տարիներին ռեսպուբլիկայում այդ ուղղությամբ ձեռք են բերվել որոշակի հաջողություններ։ Սակայն այդ աճը չի կարելի բավարար համարել, քանի որ գյուղատնտեսական մի շարք աշխատանքների մեքենայացման մակարդակը դեռևս շատ ցածր է։ Անասնապահության մեջ առայժմ գերիշխում է ձեռքի աշխատանքը։

Գյուղատնտեսության ինտենսիվ զարգացման ասպարեզում մեծ դեր է պատկանում քիմիացմանը։ Միջոցներ են ձեռնարկվում ռեսպուբլիկայում զգալիորեն ավելացնելու հանքային պարարտանյութերի արտադրությունը։

Իր զեկուցման մեջ ընկ. Ա. Քոչինյանը ընդգծեց գյուղատնտեսության մասնագիտացման կարևորությու-

նը։ Գոյություն ունեցող այն վիճակը, երբ միևնույն տնտեսությունն զբաղվում է անասնապահության բոլոր ճյուղերով և մշակում բազմապիսի կուլտուրաներ, հաճախ հնարավորություն չի տալիս լայնորեն օգտագործելու կենտրոնացված հանրային տնտեսության առավելությունները։

Խոսելով գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման գործում աշխատողների նյութական խրախուսման վճռական նշանակության մասին, զեկուցողը նշեց, որ շատ տեղերում, հատկապես ետ մնացող տնտեսություններում թույլ են տրվում նյութական շահագրգռվածության սկզբունքների լուրջ խախտումներ։ Ճիշտ չեն զուգորդվում հանրային և ըստ աշխատանքի բաշխման ֆոնդերը։ Ոչ քիչ թվով տնտեսություններում աշխատանքային կարգապահությունը պատշաճ բարձրության վրա չէ, հարկ եղած պայքար չի մղվում ծրիակերների, անբանների ու գողերի դեմ։ Անբավարար է մարդկանց կոլեկտիվիզմի, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ոգով դաստիարակելու գործը։

Ներկա պայմաններում գյուղատնտեսությունը հին ձևով վարել չի կարելի։ Այն հարկավոր է կազմակերպել գիտական հիմունքներով, հասնել հետագա մեքենայացման ու քիմիացման, արտադրության մեջ լայնորեն արմատավորել գիտության նորագույն նվաճումներն ու առաջավոր փորձը։ Մենք պետք է ձեռնարկենք կոնկրետ միջոցառումներ, որպեսզի առաջիկա 1—2 տարում ետ մնացող կոլտնտեսություններն ու սովխոզները հասցնենք առաջավորների մակարդակին։

Զեկուցման շուրջը տեղի ունեցավ մտքերի գործարար փոխանակություն։

Պլենումի վերջում ճառով հանդես եկավ ՀԿՊ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Յա. Զարոբյանը, որը ամփոփելով պլենումի աշխատանքները, մանրամասն վերլուծեց այն բոլոր խնդիրները, որոնց կենսագործմամբ հնարավոր կլինի ռեսպուբլիկայի բոլոր ետ մնացող տնտեսությունները հասցնել առաջավորների մակարդակին։

Քննարկվող հարցի վերաբերյալ պլենումը մշակեց միջոցառումներ, որոնք նոր խթան կհանդիսանան կոլտնտեսությունների և սովխոզների կազմակերպական-տնտեսական ամրապնդման, գյուղատնտեսական արտադրության հետագա զարգացման գործում։



# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԶՐՈՒՅՑԸ ԱՇԽԱՏԱՆՔՈՒՄ ՆՅՈՒԹԱԿԱՆ ՇԱՀԱԳՐԳՌՎԱԾՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Վերջերս այս թեմայով ունկնդիրների հետ զրույց ունեցավ էջմիածնի արտադրական վարչության Վերին Քյոլանլուի կոլտնտեսության վարչության նախագահ, ագիտատոր Խ. Սիմոնյանը։ Նա պատմեց, թե ինչպես մեր ամբողջ երկրում, այդ թվում և մեր ռեսպուբլիկայում աճում է լավագույն աշխատանքի համար նյութական խրախուսանքի միջոցառումներ կիրառող կոլտնտեսությունների թիվը, ընդարձակվում են նյութական քաջալերանքի շրջանակները։ Ճիշտ է, տարբեր տնտեսություններում տարբեր վարձաչափեր են կիրառվում, բայց լավ աշխատանքին՝ լավ վարձատրություն սկզբունքի ճիշտ օգտագործումը բոլոր տնտեսություններում էլ մեծապես նպաստում է արտադրության վերելքին։

— Նկատի ունենալով այդ,— ասում է ագիտատորը,— կոմունիստական պարտիան աշխատանքի լրացուցիչ վարձատրության ձևը դիտում է որպես կոլտնտեսային արտադրության աճի կարևոր խթան, իսկ դրա լայն արմատավորումը՝ որպես կոլտնտեսային շինարարության ներկա շրջանի կարևորագույն հարց։ Պարտիան նկատի ունի, որ աշխատանքի լրացուցիչ վարձատրությունը միաժամանակ նպաստում է ինչպես նյութական բարիքների արտադրության, այնպես էլ կոլտնտեսականների եկամուտների աճին։ Հետևապես վարձատրության այդ ձևը առավել ճիշտ է զուգակցում հանրային տնտեսության հետագա զարգացման և կոլտնտեսականների անձնական շահերը։ Այդ է վկայում նաև մեր ռեսպուբլիկայի առաջավոր կոլտնտեսությունների փորձը։

— Ինչպես գիտեք,— շարունակում է ագիտատորը,— մեր կոլտնտեսությունը մի քանի տարի առաջ իր ցուցանիշներով առանձնապես աչքի չէր ընկնում, ավելին, կովերի կաթնատվության և գյուղատնտեսական որոշ կուլտուրաների բերքատվության մակարդակով նա

նույնիսկ ետ էր մնում շրջանի առաջավոր տնտեսություններից։ Վերլուծելով այդ դրության պատճառները, արտելի նոր ղեկավարությունը, ձեռք առած կազմակերպական-տնտեսական մյուս միջոցառումների թվում, հատուկ ուշադրություն դարձրեց կոլտնտեսականների շահագրգռվածության բարձրացման վրա։ Արդեն մի քանի տարի է, ինչ մեզ մոտ լայնորեն կիրառվում է լավ աշխատանքին՝ լավ վարձատրություն սկզբունքը։ 1961 թվականին կոլտնտեսությունում լրացուցիչ վարձատրություն ստացան ավելի քան 120, իսկ անցյալ տարի մոտ 200 կոլտնտեսական։ Ինչպես գիտեք, պլանները գերակատարելու դեպքում մեզ մոտ լրացուցիչ վարձատրություն է տրվում։ Օրինակ, բամբակագործներին լրացուցիչ վարձատրություն է տրվում պլանից ավելի արտադրված բամբակի արժեքի մոտ 35 տոկոսի չափով, այգեգործներին՝ 5—10 տոկոսի, բանջարաբուծներին՝ 10—15 տոկոսի չափով և այլն։ Նույնպիսի վարձաչափեր են սահմանված նաև պլանային առաջադրանքները գերակատարող անասնապահների, ինչպես նաև տնտեսության մյուս ճյուղերի աշխատողների համար։ Արտադրական ստորաբաժանումների ղեկավարներին (բրիգադիրներին, ֆերմաների վարիչներին և գյուղատնտեսության մասնագետներին) լրացուցիչ վարձատրություն տրվում է նրանց սպասարկած ճյուղերի պլանները գերակատարելու դեպքում՝ նույնպես որոշակի տոկոսի չափով։ 1961 թվականին կոլտնտեսությունում լրացուցիչ վարձատրության գումարը կազմեց ավելի քան 5000 ռուբլի, իսկ անցյալ տարի վարձատրության այդ ֆոնդը հասավ ավելի քան 11 հազար ռուբլու։

Անշուշտ, մեծ հետաքրքրություն է ներկայացնում այն հարցը, թե տնտեսությունում լրացուցիչ վարձատրության սիստեմի կիրառումն ինչպես է անդրադարձել արտադրության ցուցանիշների վրա։ Տնտեսությունում 1955 թվականին բամբակենու ցանքերի մեկ հեկտարից ստացվել է 17 ցենտներ բերք, իսկ 1962 թվականին՝ 28 ցենտներ, խաղողի այգիների մեկ հեկտարի բերքատվությունը 70 ցենտներից հասել է 161 ցենտների, կաթի և մսի արտադրությունը, տնտեսության համախառն արտադրանքը և դրամական եկամուտները ավելացել են 3,5-ից մինչև 4 անգամ։ Այդ նույն ժամանակամիջոցում կոլտնտեսականների եկամուտները նույնպես աճել են





ավելի քան 4 անգամ (մեկ աշխօրի հասույթը 79 կոպեկից հասել է 3 ռուբլի 40 կոպեկի)։

Կոլտնտեսությունում գյուղատնտեսական մթերքների արտադրության աճի և կոլտնտեսականների եկամուտների ավելացման միջև կա որոշակի օրինաչափություն. արտադրության վերելքը զուգակցվում է կոլտնտեսականների հասույթի ավելացման հետ։ Հենց այդ օրինաչափության առկայության շնորհիվ մեր կոլտնտեսականները մեծ շահագրգռվածություն են ցուցաբերում իրենց աշխատանքի արդյունքների, հետևապես և հանրային արտադրության զարգացման նկատմամբ։

Նույնը նկատվում է նաև այլ տնտեսություններում։ Օրինակ, Արտաշատի արտադրական վարչության Կիրովի անվան սովխոզում արդեն երկրորդ տարին է, ինչ կիրառվում է վարձատրության նոր՝ կատարելագործված սիստեմ, որի համաձայն տնտեսության բանվորներին, բրիգադիրներին ու մասնագետներին լավ աշխատանքի համար պարգև-հավելում է տրվում մի քանի ցուցանիշների գծով։ Համախառն արտադրանքի պլանները կատարած ու գերակատարած բանվորների ու բրիգադիրների վարձատրության տարիֆային դրույքները բարձրացվում են 25 տոկոսի չափով։ Բացի դրանից, դրամական եկամուտների առաջադրանքների գերակատարումից և աշխատավարձի ֆոնդի տնտեսումից գոյացած գումարների 20 տոկոսը բաժանվում է տվյալ բրիգադների բանվորների վրա։ Տնտեսությունում նյութական խրախուսանքի առանձին չափեր են սահմանված նաև առաջատար կուլտուրաների մշակության գծով առավել աչքի ընկնող բանվորներին պարգևատրելու համար։ Վարձատրության այդ նոր՝ կատարելագործված սիստեմի կիրառումը հենց առաջին տարում հիանալի արդյունք տվեց։ Տնտեսությունում ագրոտեխնիկական բոլոր միջոցառումները կատարվեցին ժամանակին և բարձր որակով։ Դրա շնորհիվ էլ խաղողի այգիների մեկ հեկտարի բերքատվությունը հասցվեց ավելի քան 120 ցենտների՝ պլանով նախատեսված 90 ցենտների փոխարեն։ Համախառն արտադրանքի ու դրամական եկամուտների առաջադրանքները կատարվեցին 129—130 տոկոսով։ Տնտեսությունը պլանով նախատեսվածից ավելի արտադրեց 1365 տոննա խաղող։ Արտադրական առաջադրանքները գերակատարելու համար 174 հազար

ռուբլու չափով պարգև-հավելում ստացան ավելի քան 530 բանվոր:

Զրույցը ավելի տպավորիչ դարձնելու համար ագիտատորը աշխատողների նյութական շահագրգռվածության մասին տեղեկություններ է տալիս նաև ռեսպուբլիկայի վերաբերյալ:

— Նյութական խրախուսանքի միջոցառումները լայնորեն կիրառելու շնորհիվ,— շարունակում է նա,— տնտեսական մեծ արդյունքի են հասել ռեսպուբլիկայի բազմաթիվ ուրիշ տնտեսություններ: 1962 թվականին մեր ռեսպուբլիկայում աշխատանքի լրացուցիչ վարձատրության սիստեմը կիրառվեց ավելի քան 330 կոլտնտեսություններում: Արտաշատի արտադրական վարչության Փոքր Վեդի, Ավշար, Շամշադինի արտադրական վարչության Բերդ, Այգեձոր և շատ ուրիշ գյուղերի կոլտնտեսություններում աշխատանքի վարձատրության այդ առաջավոր սիստեմը կիրառվում է արտադրության բոլոր ճյուղերում:

Զրույցի այս մասում ագիտատորը ունկնդիրներին պարզաբանում է, որ վարձատրության այդ առաջավոր սիստեմի կիրառումը ենթադրում է արտադրության առավել ճիշտ կազմակերպում և պլանավորում, էկոնոմիկական լրացուցիչ հաշվարկներ, արտադրության խոր անալիզ: Բարձր արտադրողական աշխատանքը նյութապես խրախուսելու համար, հարկավոր է, որ կոլտնտեսության յուրաքանչյուր բրիգադի, ֆերմայի, օղակի պլաններն ու առաջադրանքները սահմանվեն տվյալ տնտեսության ռեալ հնարավորությունները լրիվ հաշվի առնելու հիման վրա:

Որպեսզի ճիշտ կիրառվեն նյութական խրախուսանքի միջոցառումները, հարկավոր է ռեալ դիֆերենցված արտադրական առաջադրանքներ սահմանել յուրաքանչյուր բրիգադի, ֆերմայի և օղակի համար, որը և հնարավորություն կտա տարբերելու բարձր արտադրողականությամբ աշխատողներին մյուսներից:

Ավարտված է զրույցը: Ունկնդիրներից շատերը հանդես են գալիս, պաշտպանում ագիտատորի առաջարկությունները: Իսկ բամբակագործների բրիգադիր Գրիգորյանը առաջարկում է իրենց կոլտնտեսությունում լրացուցիչ վարձատրություն սահմանել այն կոլտնտեսականների համար, որոնք օգնության կարգով աշխատել են առաջավոր բրիգադներում:

Մ. ՂԱԶԱՐՅԱՆ



## ԱԳԻՏԱՏՈՐԸ ԳՆՈՒՄ Է ՀԱՎԱՏԱՑՅԱԼՆԵՐԻ ՄՈՏ

Պայքարը կրոնական մնացուկների դեմ՝ ագիտատորի առաջնահերթ պարտքն է: Միևնույն ժամանակ դա թերևս, նրա գործունեության ամենաբարդ ուղղությունն է, որը պահանջում է և՛ հատուկ գիտելիքներ, և՛ հմտություն: «Պետք է կարողանալ պայքարել կրոնի դեմ...»— աթեիստներին այսպիսի պատվիրան է թողել մեծ Լենինը (Երկեր, հատ. 15, էջ 504): Իսկ ինչպե՞ս կատարել այդ պատվիրանը, ինչպե՞ս պայքարել կրոնական հաշիշի դեմ, ի՞նչ մեթոդով աշխատել հավատացյալների հետ:

Հատուկ նշանակություն ունի հավատացյալների հետ կատարվող անհատական աշխատանքը: Անհրաժեշտ է մասսայական միջոցառումները լրացնել աթեիստական աշխատանքի այնպիսի ձևերով, որոնք ագիտատորին թույլ տային անմիջականորեն շփում ունենալու, զրուցելու հավատացյալների հետ, անհրաժեշտ ուղղությամբ ազդելու նրանց վրա: Իսկ դա նշանակում է առաջին հերթին գնալ հավատացյալների մոտ, նրանց ընտանիքները, այնտեղ զրուցել նրանց հետ, խորտակել նրանց հավատն աստծու նկատմամբ:

Դա հասարակ գործ չէ և ագիտատորից պահանջում է համբերություն, տակտ, գիտելիքներ: Ինչպե՞ս մոտենալ հավատացյալին, ինչպե՞ս նվաճել նրա վստահությունը, ինչպե՞ս անել, որ նա անկեղծորեն զրուցի, ինչպե՞ս գտնել դեպի նրա բանականությունը, սիրտը, զգացմունքները տանող ուղին: Այստեղ հարկավոր է պատրաստ լինել դժվարությունների: Որպես կանոն, հավատացյալները նախապաշարմունքով են վերաբերվում այն մարդկանց նկատմամբ, ովքեր հանձն են առնում դաստիարակել իրենց (իսկ հավատացյալների մեծ մասը, իհարկե, անմիջապես հասկանում, զգում է, թե ագիտատորը զրույցն սկսելիս որքան հեռվից է մոտենում, չնայած սկզբում նա ամենևին էլ կրոնի մասին չի խոսում): Այդ նախապաշարմունքը միանգամայն բնական է, և դա չպետք է վհատեցնի ագիտատորին,

նրան ստիպի նահանջելու։ Բանն այն է, որ այդ նախապաշարմունքի հետ միասին (որը, ի դեպ, բոլորի մոտ միատեսակ ուժեղ չէ) հավատացյալն իր հավատի մասին խոսելու պահանջ ունի, ըստ որում ոչ միայն իր հավատակիցների, այլև ուրիշ կերպ մտածողների, աթեիստների հետ։ Այդ պահանջը տարբեր մարդկանց մոտ ունի տարբեր պատճառներ և դրսևորվում է ոչ միատեսակ։ Մոլեռանդ կրոնականը փորձում է իր զրուցակցին դարձնել հավատացյալ. կասկածողը, տատանվողը հույս ունի, որ այդպիսի զրույցը իրեն կօգնի ազատվելու կասկածներից, ամրապնդելու իր հավատը. կրոնական հաշիշից ազատվողը առանձնահատուկ սիրով է զրուցում աթեիստի հետ։

Ինչպե՞ս գնալ հավատացյալի տունը, դառնալ նրա ցանկալի հյուրը։ Այստեղ ևս բոլոր դեպքերում չի կարելի միատեսակ վարվել։ Ագիտատորի խնդիրը կբարդանա, եթե նա ուղղակի մոտենա մարդուն և հայտարարի. ես կցված եմ ձեզ։ Կարծեմ դուք հավատում եք աստծուն, ես պետք է ձեզ վերադաստիարակեմ... Այդպիսի կոպիտ մոտեցումը միայն կարող է ուժեղացնել նախապաշարմունքը, վիրավորել հավատացյալին, և նա կպարփակվի իր պատյանի մեջ։ Կենսափորձը, մոտեցումը, այն ընտանիքին ծանոթ լինելը, ուր գնում է ագիտատորը նրան կօգնեն առիթ գտնել հավատացյալին դիմելու, նրա հետ զրույց սկսելու, նրա տունը մուտք գործելու համար։ Այստեղ կարելի է օգտագործել, օրինակ, ընտրողների հետ մշտապես աշխատող ագիտատորների կապերը, դպրոցականների ընտանիքների հետ ուսուցիչների կապերը և այլն։

Իհարկե, խոսքը վերաբերում է ոչ թե կեղծավորությամբ քողարկվելուն, իր իսկական մտադրությունները թաքցնելուն (կրկնում ենք, հավատացյալն այդ բանը կկռահի, չնայած կարող է այդ մասին խկույն չասել)։ Ուղղակի հարկավոր է մարդուն հասկացնել տալ, որ ագիտատորը հարգում է նրան և նրա համոզմունքները, լրջորեն է մոտենում այդ համոզմունքներին, այդ մարդու հետ զրուցում է բարյացակամորեն, այլ ոչ թե միայն կրոնական թեմաներով։

Շատ կարևոր է, որ ագիտատորը գիտակցի և յուրացնի այդ բանը։ Գոյություն ունի սխալ կարծիք, թե իբր հավատացյալների հետ հարկավոր է առաջին հերթին խոսել նրանց հավատին վերաբերող հարցերի մասին, զրուցել միայն հակակրոնական ուղղությամբ։ Իրականում ամենևին էլ այդպես չէ։ Վ. Ի. Լենինը աթեիստներին նախազգուշացրել է աթեիստական մերկ քարոզով տարվելուց։ «Կրոնի դեմ պայքարը չի կարելի սահմանափակել վերացական-իդեոլոգիական քարոզով, չի կարելի այդպիսի մի քարոզի վերածել այն»,— նշել է Իլյիչը (Երկեր, հատ. 15, էջ 504) և խորհուրդ է տվել հավատացյալներին տալ ամենաբազմազան նյութեր, նրանց ծանոթացնել կյանքի ամենատարբեր բնագավառներին վերաբերող փաստերին։

Հավատացյալները մեր երկրում առաջին հերթին սովետական մարդիկ են, որոնք մեկ կյանքով են ապրում ամբողջ ժողովրդի հետ, հետաքրքրվում այն ամենով, ինչով հետաքրքրվում են բոլոր աշխատավորները։ Եվ հավատացյալների հետ իր աշխատանքում հաջողություն կունենա այն ագիտատորը, որը չի շտապի հենց առաջին զրույցներից առաջ քաշել «Աստված չկա» լոզունգը, այլ իր աշխատանքը կկառուցի այնպես, որ նրա զրուցակիցը վերջիվերջո ինքը հանգի այդ եզրակացության։ Դրա համար հարկավոր են երկարատև, քրտնաջան աշխատանք, բազմաթիվ զրույցներ այնպիսի թեմաներով, որոնք, թվում է, թե հեռու են կրոնից, բայց այս կամ այն կերպ, այս կամ այն կողմից խարխլում են աստծու նկատմամբ հավատի հիմքը։ Այստեղ հնարավոր չէ թվարկել այդպիսի զրույցների թեմաները։ Միայն մի քանի օրինակով ցույց տանք, թե ինչպես կարելի է կառուցել այդպիսի զրույցները և թե ինչպես աննկատելիորեն մարդկանց մոտեցնել աստծու, կրոնի հարցերին վերաբերող զրույցին։

Վերցնենք, օրինակ, միջազգային թեմաներով զրույցները։ Հավատացյալները, ինչպես և բոլոր սովետական մարդիկ, մեծ հետաքրքրություն են ցուցաբերում այդ հարցերի նկատմամբ։ Դա լավ առիթ է զրուցակցի մեջ հետաքրքրություն առաջացնելու, նրա հետ խոսակցություն սկսելու, նրա կարծիքն իմանալու, երբեմն էլ նրա հետ վիճելու համար։ Երբ այդպիսի զրույցները դառնան սովորական, կարելի կլինի դրանցից մի քանիսի ժամանակ այս կամ այն կերպ շոշափել արտասահմանյան երկրների կրոնի գործունեությունը,

խաղաղության համար մղվող պայքարում եկեղեցականների դիրքերը: Վերջերս Ֆիդել Կաստրոն հանդես եկավ մի ճառով, որի մեջ խոսեց այն մասին, որ ամերիկյան իմպերիալիստները ռեվոլյուցիոն Կուբայի դեմ իրենց պայքարում օգտագործել են կաթոլիկ եկեղեցին, իսկ այնուհետև որոշ կրոնական աղանդներ: Դա արդեն առիթ է կարծիքների փոխանակության, որոշ պարզաբանումների համար: Կամ արտասահմանյան եկեղեցիների, առաջին հերթին կաթոլիկ եկեղեցու, աննախանձելի դերը Աֆրիկայի և Ասիայի ժողովուրդների գաղութային ստրկացման գործում. այստեղ էլ խոսելու շատ բան կա: Անկասկած, հետաքրքիր կլինի նաև պատմել Հռոմի պապի «Խաղաղություն աշխարհում» էնցիկլիկայի (շրջաբերական) մասին, այն մասին, թե ինչու կաթոլիկ եկեղեցին արդի պայմաններում հարկադրված է հանդես գալու խաղաղության պաշտպանությամբ, զինաթափման կոչ անելու և այլն: Բայց հավատացյալների հետ զրուցելու ժամանակ քննարկման դրվելիք ամենագլխավոր հարցը հետևյալն է. «Արդյոք, աստվա՞ծը մեզ կփրկի նոր ավերիչ պատերազմից: Մենք աղոթքներո՞վ պետք է կանխենք պատերազմի սպառնալիքը»: Այստեղ հավատացյալների այն կարծիքին, թե իբր «ամեն ինչ աստծու ձեռքին է», հարկավոր է հակադրել պատերազմի ու խաղաղության հարցերի մեր մարքսիստական, գիտական բացատրությունը, համոզիչ կերպով, անցած պատերազմների օրինակներով, ժամանակակից աշխարհում ուժերի հարաբերակցությամբ ցույց տալ, որ պատերազմի սկիզբը, ընթացքը և արդյունքը աստծուց չեն կախված, որ մի կողմից խաղաղությունը պաշտպանող, մյուս կողմից պատերազմի ձգտող ուժերի հարաբերակցությունն այժմ այնպիսին է, որ կա պատերազմ թույլ չտալու, խաղաղությունը, ժողովուրդների անվտանգությունն ապահովելու ռեալ հնարավորություն: Եվ այդ խնդիրը լուծվում է ոչ թե աղոթքներով, ոչ թե աստծուն դիմելով, այլ սոցիալիստական լագերի հզորությունն ու պաշտպանունակությունն ամրապնդելով, խաղաղության բոլոր կողմնակիցների համատեղ ջանքերով:

Կամ վերցնենք տիեզերքի հետազոտությունը. սա ինչպիսի՜ հրապուրիչ և լավ թեմա է հավատացյալների



հետ զրուցելու համար: Ինչպես և բոլոր սովետական մարդիկ, նրանք հսկայական հետաքրքրություն են ցուցաբերում Երկրի արհեստական արբանյակների, դեպի Լուսին, Վեներա, Մարս միջմոլորակային հրթիռների արձակման, տիեզերագնացների թռիչքների նկատմամբ: Այդ զրույցների ժամանակ նույնիսկ աստծու մասին չհիշեցնելով, ագիտատորը հավատացյալներին հաղորդում է այնպիսի գիտական տվյալներ, շոշափում է այնպիսի հարցեր, որ նրա զրուցակիցը չի կարող չխորհել, «երկինքը» աստծու, հրեշտակների տունը, երկնային թագավորություն համարող կրոնական կարծիքը չըհամեմատել այն ամենի հետ, ինչ «երկինք»— տիեզերքի մասին հայտնի է դարձել մարդկության ջանքերի շնորհիվ:

Ոմանք տիեզերագնացների թռիչքների աթեիստական նշանակությունը հանգեցնում են այն բանին, թե ահա, տիեզերագնացները ոչ մի աստված չեն տեսել, կնշանակի աստված չկա: Դա պարզեցված մոտեցում է և բավականին համոզիչ փաստարկ չէ: Բանը իհարկե, ոչ թե այն է, որ տիեզերագնացներն աստված չեն տեսել այլ, այն, որ տիեզերքի հետազոտության բնագավառի բոլոր նվաճումները, այդ հետազոտությունների ժամանակ ստացված գիտական տվյալները լիովին հերքում են կրոնական, մասնավորապես աստվածաշնչի այն պատկերացումները, թե իբր գոյություն ունի ինչ-որ «սուրբ երկինք» (աստվածներով ու հրեշտակներով), որը միացած է երկրի հետ: Գիտական տվյալները վերացնում են երկնքի հակադրումը «մեղավոր» երկրին, որը բոլոր աղանդների սպասավորները առանձնահատուկ համառությամբ արմատավորում են հավատացյալների գիտակցության մեջ:

Հավատացյալների հետ հարկավոր է զրուցել ոչ միայն տիեզերական թռիչքների մասին: Բնության ուժերի նկատմամբ մարդու իշխանությունն ամրապնդող գիտական յուրաքանչյուր նվաճում կարող է առիթ ծառայել աթեիստական հետաքրքիր, նպատակասլաց զրույցների համար: Ատոմային միջուկի էներգիայի օգտագործումը, ժամանակակից բժշկության

հաջողությունները, միչուրինյան կենսաբանության նվաճումները, ժառանգականության գաղտնիքների բացահայտումը և այլն՝ սրանք բոլորը թեմաներ են այդպիսի զրույցների համար։

Անհրաժեշտ է վառ, բովանդակալից զրույցներ ունենալ նաև մեր սովետական իրականության, կոմունիզմի կառուցման, սովետական մարդկանց աշխատանքային գործերի մասին։ Մեր տնտեսական հաջողությունների, ժողովրդի բարեկեցության բարձրացման, սոցիալիստական դեմոկրատիայի ծավալման, անհատի պաշտամունքի և նրա հետևանքների հաղթահարման մասին խոսելիս հարկավոր է ունկնդիրներին մոտեցնել այն եզրակացության, որ երկրային այն բոլոր բարիքները, որոնցից մենք օգտվում ենք, ոչ թե աստված է պարգևել, այլ ստեղծվել են մարդկանց ձեռքերով, նրանց անձնվեր աշխատանքով, որ հարկավոր է ոչ թե աղոթել գոյություն չունեցող աստծուն, այլ աշխատել մարդկանց բարօրության համար, ոչ թե հույսը դնել մտացածին հանդերձյալ աշխարհի «երկնային թագավորության վրա», այլ իր համար և ժառանգների համար երջանիկ կյանք կառուցել — այստեղ՝ երկրի վրա։

Իհարկե, հավատացյալների հետ ագիտատորների զրույցների ժամանակ վաղ թե ուշ հասնում է այնպիսի էտապ, երբ քննարկման առարկա են դառնում անմիջականորեն կրոնական հավատքի հարցերը։ Վերը արդեն ասվեց, որ այդ բանում շտապելու հարկ չկա, թող վերանա անվստահությունը, թող զրուցակցի մեջ հարգանք առաջանա ձեր նկատմամբ, թող նա սովորի անկեղծ խոսել, արտահայտել իր կարծիքը, վիճել։ Բայց և չարժե արհեստականորեն խույս տալ կրոնական թեմաների շուրջը խոսելուց, հետաձգել այդպիսի զրույցները։ Մի խոսքով, հարկավոր է, որ այդ հարցերը օրակարգում դրվեն բնականորեն, ինքնըստինքյան, այլ ոչ թե դիտավորյալ պարտադրվեն զրուցակցին։

Ի՞նչ պետք է հաշվի առնվի այդ զրույցներում։ Առաջին հերթին այն, որ կանոնավոր կերպով եկեղեցի կամ աղանդավորական աղոթարան հաճախող հավատացյալը գտնվում է կրոնական պրոպագանդայի մշտական (և, պետք է ասել, շատ հմուտ ու խորամանկ)





ազդեցության տակ։ Հենց այդ պրոպագանդային է, որ ագիտատորը պետք է հակադրի իր հակակրոնական ներգործությունը հավատացյալի վրա, նրան տա այն հարցերի ճիշտ, գիտականորեն հիմնավորված, մատերիալիստական պատասխանները, որոնք քարոզիչները նրան բացատրում են կրոնական տեսակետից։

Անհրաժեշտ է նկատի ունենալ նաև հետևյալ հանգամանքը։ Այժմ իրենք՝ աստվածաբանները և եկեղեցու սպասավորները ևս այնքան էլ չեն հավատում աստվածաշնչի շատ դոգմաների գրավչությանը։ Նրանք իրենց քարոզներում ծանրության կենտրոնը փոխադրում են բարոյականության, երկրային գործերի և այն հարցերի վրա, թե մարդ իրեն ինչպես պետք է պահի կյանքում, աշխատանքում, կենցաղում։ Ուստի և ագիտատորները հավատացյալների հետ իրենց զրույցների ժամանակ պետք է ավելի մեծ ուշադրություն դարձնեն բարոյական պրոբլեմներին, հետևողականորեն ու համբերությամբ կրոնը դուրս մղեն այդ ապաստարանից։ Կյանքի նպատակի և իմաստի, մարդու պարտքի և կոչման, նրա բարոյական, հոգևոր գեղեցկության, մարդկանց փոխհարաբերությունների մասին, միմյանց օգնելու անհրաժեշտության, աշխատելու պարտականության մասին և շատ ու շատ այլ թեմաներ պետք է մշտապես տեղ ունենան հավատացյալների հետ ագիտատորի զրույցներում։ Հարկավոր է այդ հարցերը պարզաբանել ճիշտ, մարքսիստական-լենինյան դիրքերից, համոզիչ կերպով մերկացնելով կրոնական բարոյախոսության սնանկությունը, հակասականությունը, հակամարդասիրական բնույթը, կրքոտ և համոզված դրան հակադրելով կոմունիստական բարոյախոսության նորմաներն ու պահանջները։

Կրոնի վնասը պարզաբանելիս չի կարելի սահմանափակվել միայն պատմելով, որ կրոնը խանգարում է կոմունիզմի կառուցման մեր մեծ գործին. հարկավոր է նաև ցույց տալ, թե այն ինչպիսի վնաս է հասցնում հենց հավատացյալներին (չնայած նրանք սովորաբար չեն գիտակցում այդ բանը) և թե ինչպես այն հնարավորություն չի տալիս արժանավայել, բովանդակալից անցկացնելու մեզնից յուրաքանչյուրին տրված միակ կյանքը, մեր երկրային կյանքը, աղքատացնում է այն, զրր-

կում է մարդկային շատ ուրախություններից։ Այդ մասին շատ համոզված, մեծ ափսոսանքով ու դառնությամբ են խոսում նախկին հավատացյալները։

Ինքնըստինքյան հասկանալի է, որ հավատացյալների հետ զրույցների ձևը, դրանց տոնը պետք է լինի բարյացակամ, որ հարկավոր է զգուշությամբ խուսափել այն ամենից, ինչ կարող է վիրավորել հավատացյալի զգացմունքները։ Նա պետք է ագիտատորի մեջ տեսնի ընկերոջ, որը, չնայած համաձայն չէ հավատացյալի հայացքներին ու համոզմունքներին, բայց հարգում է նրան, անկեղծորեն ցանկանում է օգնել նրան։

Այստեղ կարևոր է ընդգծել ևս մի հանգամանք։ Բանն այն է, որ մեզ մոտ ամենևին էլ ամենուրեք չէ, որ ճիշտ են պայքարում կրոնի դեմ։ Ոմանք, մոռանալով լենինյան այն պահանջը, որ պետք է «կրոնական մշուշի դեմ պայքարենք զուտ գաղափարական ու միայն գաղափարական զենքով» (Երկեր, հատ. 10, էջ 96), հակված են քրտնաջան դաստիարակչական աշխատանքը նենգափոխելու վարչական միջոցներով, հրամանով, գոռոցով։ Պատահում են դեպքեր, երբ հավատացյալներին անհավասար պայմանների մեջ են դնում արտադրության մյուս աշխատողների համեմատությամբ, երբեմն էլ պարզապես նրանց քշում են կոլեկտիվից։ Այդպիսի գործողությունները հսկայական վնաս են հասցնում հակակրոնական դաստիարակությանը, կրոնի դեմ մղվող պայքարին։ Մարդկանց չբաժանել ըստ հավատմունքի, հավատացյալներին չդիտել որպես տականքների, այլ բոլոր աշխատավորներին՝ և՛ աթեիստներին, և՛ հավատացյալներին համախմբել կոմունիզմի կառուցման, կոնկրետ տնտեսական խնդիրների լուծման համար մղվող պայքարում. աշխատանքում, կոլեկտիվում վերադաստիարակել նրանց, ովքեր դեռ հավատում են աստծուն՝ ահա թե ինչպես է դրված խնդիրը։ Եվ ագիտատորը կոչված է լինելու կրոնի դեմ պայքարի հարցերում պարտիայի լենինյան գծի իրականացման ակտիվ մարտիկը, անհաշտվողականություն ցուցաբերելու ինչպես վարչարարների, այնպես էլ եկեղեցականների, աղանդավորական առաջնորդների կողմից խղճի ազատության



սկզբունքների, սովետական օրենքների բոլոր խախտումների նկատմամբ։

Բնակավայրում հավատացյալների հետ զրույցներ անցկացնող ագիտատորը պետք է անպայման սերտ կապեր պահպանի այն կոլեկտիվի հետ, որտեղ աշխատում է հավատացյալը, այդտեղի ագիտատորների հետ միասին լուծի այն հարցը, թե ինչպես ավելի լավ համաձայնեցնել ջանքերը, որպեսզի հավատացյալը որքան կարելի է շուտ ազատվի կրոնական կապանքներից։ Եթե հավատացյալների ընտանիքում կան երեխաներ, այդպիսի կապեր պետք է հաստատվեն այն դպրոցների մանկավարժների հետ, որտեղ նրանք սովորում են։

Հարկավոր է հաշվի առնել, որ մարդիկ աստծուն միատեսակ չեն հավատում, յուրաքանչյուրն ունի կրոնականության իր պատճառը, որ միատեսակ չեն կրոնականության դրսևորման ձևերը։ Ուստի հարկավոր է յուրաքանչյուր հավատացյալի նկատմամբ ունենալ հատուկ մոտեցում, աշխատանքի հատուկ ձևեր, որոնք տվյալ պայմաններում առավել օգուտ կբերեն։ Ագիտատորը պետք է լավ ծանոթ լինի հավատացյալների ընտանիքների կյանքին, աչքաթող չանի նրանց կյանքի կարևոր իրադարձությունները, անհրաժեշտության դեպքում օգնի նրանց։ Դա հատկապես կարևոր է այն մարդկանց նկատմամբ, որոնք դժբախտության մեջ են ընկել, վիշտ ունեն. չէ՞ որ հենց այդպիսի մարդիկ են դառնում եկեղեցականների, աղանդավորական քարոզիչների ակտիվ մշակման օբյեկտներ։

Հավատացյալների հետ աշխատող ագիտատորի հավատարիմ օգնականը պետք է դառնա գիրքը։ Անհրաժեշտ է մարդկանց օգնել ընթերցանության համար գրքեր ընտրելու գործում, նրանց համար գրքեր բերել, քննարկել կարդացածը, հասնել այն բանին, որ նրանք դառնան գրադարանի ընթերցողներ և այլն։ Այս դեպքում էլ հարկավոր չէ հակակրոնական գրականությունը հավատացյալի տուն բերել առանց անհրաժեշտ նախապատրաստության։ Այստեղ կարող են մեծ ծառայություն մատուցել գեղարվեստական գրականության՝ և

կլասիկների, և մեր ժամանակակիցների ստեղծագործությունները, գիտահանրամատչելի և այլ գրքերը։ Իսկ ժամանակի ընթացքում կարելի է այդ գրքերի շարքը մտցնել նաև Եմ. Յարոսլավսկու, Ի. Ի. Սկվորցով-Ստեպանովի և սովետական ուրիշ նշանավոր աթեիստների գրքեր։

Հարկավոր է օգտագործել նաև ռադիոն, հեռուստատեսությունը, կինոն, թատրոնը, կերպարվեստը։ Օրինակ, միասին դիտել ու լսել ռադիո կամ հեռուստատեսային հաղորդումներ, ֆիլմեր, ներկայացումներ, այցելել պատկերասրահ, իսկ այնուհետև զրուցել տեսածի ու լսածի շուրջը։ Այդպիսի ձևերը կարևոր են նաև այն պատճառով, որ կրոնը գործում է մարդու ոչ միայն բանականության, այլև զգացմունքների վրա (դրան մասնավորապես նպաստում են եկեղեցական ծիսակատարությունները, բաբտիստների երգեցողությունները և այլն), և հարկավոր է կրոնին հակադրել մեր կենսահաստատ արվեստի էմոցիոնալ ներգործությունը։

Հավատացյալների հետ աշխատելը հանձն առած ագիտատորը պետք է ինչպես հարկն է զբաղվի ինքնակրթությամբ։ Իհարկե, նրանից չի պահանջվում մանրամասն իմանալ աստվածաշունչը, եկեղեցական ծիսակատարությունները և այլն. դա չէ, որ վճռում է գործի հաջողությունը. բայց, աթեիստական աշխատանքը հաջողությամբ կատարելու համար անհրաժեշտ են գիտելիքներ, հարկավոր է տիրապետել աթեիզմի մեթոդիկային։ Շատ օգտակար է կամ լեկտորիումում, կամ աթեիստների դպրոցում աթեիստական դասախոսություններ լսել, մասնակցել գիտական աթեիզմի հիմունքների ուսումնասիրման քաղխմբակի պարապմունքներին և այլն։ Բայց ամենագլխավորը, իհարկե, ինքնուրույն աշխատանքն է գրքի վրա։

Ինչպես տեսնում ենք, աթեիստ ագիտատորի աշխատանքը հեշտ չէ, այն պահանջում է շատ ժամանակ ու ջանքեր։ Բայց նա ավելի պտղավոր կլինի, ավելի մեծ բովանդակություն կստանա, եթե այդ ջանքերը տան իրենց պտուղները, եթե նրա զրույցների շնորհիվ մարդիկ խզեն իրենց կապերը կրոնի հետ։

Ա. ՄԱՍԼՈՎԱ



## ՍՊԱՌՄԱՆ ՀԱՆՐԱՅԻՆ ՖՈՆԴԵՐԻ ԱՃԸ ՍՍՌՄ-ՈՒՄ

Մեր երկրում անշեղորեն աճում են սպառման հանրային ֆոնդերը։ Եթե 1940 թվականին աշխատավորները աշխատավարձից դուրս արտոնությունների և վճարումների ձևով ստացել են 4 միլիարդ 200 միլիոն ռուբլի, որից 700 միլիոնը կենսաթոշակ և նպաստ, ապա 1962 թվականին այն հասնում է 28 միլիարդ 400 միլիոն ռուբլու, որից 11 միլիարդը կենսաթոշակ և նպաստ։

Հաշվումները ցույց են տալիս, որ ներկայումս չորս շնչից բաղկացած ամեն մի ընտանիք միջին հաշվով սպառման հանրային ֆոնդերից տարեկան օգտվում է 500 ռ. չափով։

Սովետական իշխանության տարիներին բնակարանային շինարարության համար, միայն պետական միջոցների հաշվին, ներդրվել է մոտ 55 միլիարդ ռուբլի։

Մեր երկրում հանրային ֆոնդերի անշեղ աճման փայլուն օրինակ է այն հանգամանքը, որ բուռն թափով աճում է ժողովրդական կրթությունը։ Ներկայումս ՍՍՌՄ-ում (ուսուցման բոլոր ձևերում) սովորում են ավելի քան 61 միլիոն մարդ, գործում են 277 հազար հանրակրթական դպրոցներ, ավելի քան չորս հազար բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններ։

Վերջին 10 տարում ՍՍՌՄ բուհերը երկրին տվել են ավելի քան մեկ միլիոն ինժեներներ։ Դա երեք անգամ ավելի է նույն ժամանակամիջոցում ԱՄՆ-ում պատրաստված ինժեներների թվից։ Միայն 1963 թվականին բուհերը և տեխնիկումները պատրաստել են 800 հազար մասնագետներ կամ 45 անգամ ավելի, քան 1914 թվականին։

Հանրային ֆոնդերից պատկառելի բաժին է հասնում ժողովրդական առողջապահությանը։ Եթե ցարական Ռուսաստանում 10 հազար մարդուն հասնում էր մեկ բժիշկ, ապա ՍՍՌՄ-ում նույն թվով բնակչությանը հասնում է 20 բժիշկ։ Աշխարհի յուրաքանչյուր չորս բժշկից

մեկը սովետական բժիշկ է։ Եթե ցարական Ռուսաստանում հիվանդանոցային մահճակալների թիվը հասնում էր 208 հազարի, ապա այժմ ՍՍՌՄ-ում այն հասնում է 1,9 միլիոնի։

Ամեն տարի հանրային ֆոնդերից մեծ գումար է հատկացվում սովետական քաղաքացիների թոշակավորմանը։ Միայն անցյալ տարի պետության հաշվին վճարվել է 8,2 միլիարդ ռուբլի թոշակ, չհաշված այն գումարները, որ կոլտնտեսականները կոլտնտեսություններից ստացել են իբրև թոշակ։ Ներկայումս ՍՍՌՄ-ում թոշակառուների թիվը (բանվորներ, ծառայողներ, կոլտնտեսականներ) հասնում է 25 միլիոնի։ Աշխատավորների հանգստի և բուժման համար հանրային ֆոնդերից ամեն տարի մեծ գումար է հատկացվում։ Այժմ երկրում գործում են 2 հազար սանատորիա, մոտ 1.200 գիշերային սանատորիաներ չափահասների ու երեխաների համար և մոտ 900 հանգստյան տուն։

## ՄԱՖԻ

Այս անունով է կոչվում Իտալիայի Սիցիլիա կղզում գտնվող հանցագործների տեռորիստական կազմակերպությունը, որը գոյություն ունի մոտ 100 տարի։

Մաֆիի անդամները կողոպուտներ, հափշտակություններ և ըսպանություններ են կատարում ոչ միայն Իտալիայի կղզիներում ու քաղաքներում, այլև Ֆրանսիայում, Արևմտյան Գերմանիայում, ԱՄՆ-ում և Հյուսիսային Աֆրիկայում։ Այդ կազմակերպության մասին շատ են գրում իտալական թերթերը, բայց նրա դեմ իսկական պայքար չի մղվում, որովհետև մաֆիի անդամները սերտ կապերի մեջ են գտնվում բուրժուական քաղաքական պարտիաների և տեղական իշխանությունների հետ։ Վերջիններիս խորհրդով նրանք սպանում են դեմոկրատական կազմակերպությունների ղեկավարներին։ Վերջերս մաֆիի բանդիտները սպանեցին գյուղացիական շարժման գործիչ Պլաչիդո Ռիզզոտտոյին, որը համարձակվել էր ստեղծել գյուղատնտեսական կոոպերատիվ, Բերնարդինո Վերրոյին և տասնյակ ուրիշ գործիչների, որոնք նույնպես պայքարի էին դուրս եկել աշխատավոր գյուղացիների շահերի համար։

---



## ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՀՈՒՄՈՐ

### Չսխալվեց

Տոնավաճառում թիկնոցով և լայնեզր գլխարկով իրար երկու մարդ են հանդիպում։

— Դուք, հավանական է, կրոնավո՞ր եք,— հարցրեց մեկը մյուսին։

— Իհարկե, իհարկե։ Ասացեք, ինչից դուք այդ ենթադրեցիք։

— Դե, ձեր փորը չափազանց մեծ է, դրա հետ մեկտեղ դուք անպատկառ աչքեր ունեք։

— Անպատկառը ինքդ ես։

— Դուք էլ չսխալվեցիք։ Ես նույնպես կրոնավոր եմ։

### Մրցեցին

Մի անգամ ատենադպիրը հայտնեց տերտերին, որ երգելու մեջ կգերազանցի նրան, որովհետև կարող է 10 բաժակ օղի խմել և չարբենալ։ Նստեցին պանդոկում և սկսեցին օղի խմել։ Իսկ որպեսզի հաշվի մեջ չսխալվեն, յուրաքանչյուրը իր դիմացի պատին մեխով գծիկներ էր քաշում։

Տեսնում է տերտերը, որ տարվում է և ահա վերցնում ու ջնջում է ատենադպիրի տասներորդ գծիկը, մինչև այն գրաղված էր տասնմեկերորդ բաժակը լցնելով։ Սկսում են վիճել։

Այն ժամանակ ատենադպիրը թևքով ջնջում է բոլոր նշաձները։

— Այդ ինչ արեցիք, ատենադպիր։

— Մեզ, տեր հայր, անհարմար է վիճել։ Ավելի լավ է հաշիվը սկսենք նորից, առաջին բաժակից։

### Կարող են դուրս բերել

Մի մարդ երկու որդի ուներ, և այնքան էլ ծույլ, որ աշխարհը չէր տեսել։ Նրանց ոչ մի բան չէր հետաքրքրում, բացի քնելուց։ Կեսօրին նրանց արթնացնում էին, ջուր շաղ տալիս վրաները, իսկ նրանք՝ սկի։ Վերջապես հայրը զայրացավ և տունը հրդեհեց։

— Ահա,— ասում է նա,— դուք հիմա կտեսնեք, թե նրանք ինչպես արագ են վեր կենալու։

Արթնանում է նրանցից մեկը, նկատում կրակը և սկսում արթնացնել մյուսին։

— Վեր կաց, եղբայր, խրճիթը այրվում է։

Հորանջելով մյուսն ասում է.

— Այո, բայց կարող է պատահի, որ մեզ դուրս բերեն... և շուռ է գալիս մյուս կողքին։

---

ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻՆ

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. Մեծ քիմիան սոցիալիստական ինդուստրիայի հարվածային ճակատն է

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Դեպի ՍՄԿՊ Կենտկոմի պլենում, *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի նոյեմբերի 13-ի համարում։*

Քիմիական նյութերը գործադրել բերքատվության մեջ. *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի նոյեմբերի 21-ի համարում։*

Ս. ԹԵՎՈՍՅԱՆ—Քիմիական արդյունաբերության զարգացման հեռանկարները, *հոդված, տպագրված «Լենինյան ուղիով» ամսագրի 1963 թվականի 10-րդ համարում։*

## 2. Լայն մրցություն կոլտնտեսությունների ու սովխոզների էկոնոմիկայի բարձրացման համար

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ—Ավելի լրիվ բավարարել բնակչության պահանջմունքները գյուղատնտեսական մթերքների ասպարեզում, *ՍՄԿՊ XXII համագումարին տված հաշվետու զեկուցումից, էջ 104—112, Հայպետհրատ, 1961։*

Բարձրացնել ետ մնացող կոլտնտեսությունների ու սովխոզների էկոնոմիկան, *«Լենինյան ուղիով» ամսագրի 1963 թվականի 10-րդ համարի առաջնորդող հոդվածը։*

Ապահովել գյուղատնտեսական արտադրության հետագա արագ վերելքը, *«Հայաստանի գյուղատնտեսություն» ամսագրի 1963 թվականի 10-րդ համարի առաջնորդող հոդվածը։*

## 3. Կազմակերպված անցկացնել անասունների ձմեռային շրջանը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Կազմակերպված անցկացնել ճանրային հոտի ձմեռումը, *«Ս. Հ.»-ի 1963 թվականի նոյեմբերի 16-ի առաջնորդողը։*





Նախապատրաստված սկսել մսուրային շրջանը, *հոդված, տպագրված «Հայաստանի գյուղատնտեսություն» ամսագրի 1963 թվականի 10-րդ համարում։*

## 4. Աշխատանքի արտադրողականության բարձրացումը մեր առաջնահերթ խնդիրն է

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Աշխատանքի արտադրողականության բարձրացումը, *Երկեր, հատոր 27, էջ 310, Հայպետհրատ, 1961։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ամեն կերպ բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, *ՍՄԿՊ XXII համագումարին տված հաշվետու զեկուցումից, էջ 75—78, Հայպետհրատ, 1961։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Աշխատանքի արտադրողականության համար մղվող պայքարը, *ՍՄԿՊ Կենտկոմի նոյեմբերյան պլենումին տված զեկուցումից, Հայպետհրատ, 1962։*

Լ. Ֆ. ԻԼՅԻՉՈՎ— Պարտիայի գաղափարական աշխատանքի հերթական խնդիրները, *զեկուցում ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումում, Հայպետհրատ, 1963։*

ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումի որոշումը, *Հայպետհրատ, 1963։*

## 5. Հողատարածությունների ոռոգումը և պարարտացումը երաշխավորված բարձր բերքի գործոններն են

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ստեղծել երաշխավորված բարձր բերքի առացման կայուն բազա, *ճառ, արտասանած Հյուսիսային Կովկասի գյուղատնտեսության աշխատողների Կրասնոդարի խորհրդակցությունում, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հոկտեմբերի 3-ի համարում։*

ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների սովետի դիմումը հացահատիկային և մյուս կուլտուրաների բերքատվությունը բարձրացնելու համար հանքային պարարտանյութերի և բույսերի պաշտպանության քիմիական միջոցների արտադրությունն ավելացնելու մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հոկտեմբերի 6-ի համարում։*

ՑԱ. Ն. ԶԱՐՈԲՅԱՆ— *Ճառ, «Հարուստ բերքի համար» մրցության առաջավորների ռեսպուբլիկական խորհրդակցությունում, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հոկտեմբերի 23-ի համարում։*

---

Ի տ. խմբագրի՝ Ռ. Հ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

# ՇԱՐՈՒՆԱԿՎՈՒՄ Է

«ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ»-ի 1964 թվականի բաժանորդագրությունը.

1 ամիսը— 15 կոպեկ
6 ամիսը— 90 կոպեկ
12 ամիսը— 1 ռուբ. 80 կոպեկ

## ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՎԵՑԵՔ

«ԳԻՏՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱ» ամսագրին.

1 ամիսը— 40 կոպեկ
6 ամիսը— 2 ռուբ. 40 կոպեկ
12 ամիսը— 4 ռուբ. 80 կոպեկ

«ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ»

---

**Отдел идеологической работы ЦК КП Армении**

АГИТАТОРИ БЛОКНОТ

№ 23

1963

*ՎՖ 10577* *Պատվեր 1047* *Տիրաժ 7961*

*Հանձնված է արտադրության 21/XI 1963 թ.*
*Ստորագրված է տպագրության 7/XII 1963 թ.*

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆարդյունաբերության և հրատարակչությունների գլխավոր վարչության II տպարան,*
*Երևան, Կնունյանցի № 8։*
*Գինը 8 կոպ.*

Ինդեքս՝ 77704